## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Փետրուար 18ի տօնակատարութեան առթիւ Վալանսի յանկերներէն հանգանակուած :—

Յակոբ Կօշկակարեան 5500 ֆրանք, Մարտիրոս Գօյունեան հազար, Արամ Պալեան հազար, Գրիգոր Գուչեան 1500, Պետրոս Խաչերեան, Յարութիւն Մաղաքեան, Գէորգ Քիրլճեան, Սուրէն Խաչատուրեան, Եղիազար Զօխախեան, Աբրահամ Շահինեան, Մանուկ Տէրէպաշեան հազարական, Օհան Թէպոյեան 500, Օտէթ Քէչէճեան, Սմբատ Հայրապետեան, Գէորգ Մեսրոպեան հազարական, Տիկին Գասեան 500, Ոմն, Տիրատուր Սիմոնեան հազարական, Ղազար Գույումճեան երկու հազար, Միսաք Միրզէ հազար ֆրանք, գումար 25.000 ֆրանք :

## ԹՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Ց. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու բոլոր ընկերները այս Շաբաթ ժամը 20.30ին, Մշակոյթի Տան մեծ սրահին մէջ։ 17 Րիւ Պլէօ (մէթրօ Քատէ) ::

ՕՐԱԿԱՐԳ.— Շրջ. ժողովի օրակարգի հարցերու քննութիւն :

ՎԱԼԱՆՍ.— Հ. Ց. Դ. Շրջ. կոմիտէի ընդհ. ժողովը, այս Կիրակի առաւօտ ժամը 8.30ին Աճապահեան ակումբը։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է ։

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Ց. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ դպրոցի սրահին մէջ, ժամը 21ին։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է ։

ՎԻԷՆ.— Հ. Ց. Դ. Անի կոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 20.30ին ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Կարեւոր օրակարգ ։

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Ց. Դ. Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբերն ու ենթակոմիտէները :

11 Ապրիլ, Շաբաթ օր, ժամը 21ին՝ Վարանդեան, Ակնունի :

12 Ապրիլ, Կիրակի՝ Քրիստափոր, ժամը 15ին, Արամ, առաւօտ ժամը 10ին ։

Կարեւոր այս հաւաքոյթներուն ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէն ։

ՓԱՐԻԶ.— Հ. Ց. Դ. Ռաս. Թուրէն խումբի ընդհ. ժողովը այս Կիրակի ժամը 3ին, 17 Րիւ Պլէօ :

ԿԱՊ. ԽԱՉԻ Կրընոպլի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Կիրակի ժամը 15ին, դպրոցի սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ ։

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի վարչական նիստը այս Շաբաթ կէսօրէ յետոյ ժամը 4ին, Քաֆէ Րէժան ։ Ներկայ կ'ըլլայ Տիկին Տիրուհի Աճէմեան : Կարեւոր օրակարգ ։

## ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

### Հ. Բ. Ը. Մ.Ի

### ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 53ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած Հ. Բ. Ը. Մ.ի Լիոնի մասնաճիւղին կողմէ :

Երկուշաբթի, Ապրիլ 13, երեկոյեան ժամը 8.30ին, Սինեմա Փաքսի մէջ, 129 Րիւ Պուալօ :

Առաջին մասը գեղարուեստական խնամուած բաժին, Լիոնի Հայ Մշակութային Միութեանց ֆառասուն հոգինոց երկսեռ երգչախումբի, սիրայօժար մասնակցութեամբը, ղեկավարութեամբ Ա. ՍԻՐԱՆՈՍԵԱՆի :

Տեղական մասնաճիւղի ուղերձը եւ երկամեայ գործունէութեան զեկոյցը :

Փարիզի Կեդր. Յանձնաժողովի խօսքը, կարեւոր յայտնութիւններ տրուած որոշումներու մասին։

Ներկայ կ'ըլլան՝ Տոքթ. Ա. Պէօյիւքեան եւ Գր. Պահրի :

Երկրորդ մասին մէջ պիտի ցուցադրուի լինոհայութիւնը հետաքրքրող ֆիլմ մը, այս ֆիլմը պատրաստուած է 21 Մայիս 1949ին Վիլէօրպանի Պետ. Թատերասրահին մէջ մասնաճիւղիս կողմէ սարքուած պարահանդէսին։ Առաջին անգամն է որ պիտի ցուցադրուի :

Կը ներկայացուի նաեւ «Պատուոյ համար»ը :

Imprimerie Spéciale
du Journal " Haratch "

# 30 ԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆ

Ֆ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ

ԿԻՐԱԿԻ 12 ԱՊՐԻԼ ԺԱՄԸ 15,30ԷՆ 18,30

**Grand Amphithéâtre de la Sorbonne, 47 Rue des Ecoles**

SOUS LE HAUT PATRONAGE DE

M. MAURICE HERZOG

**Haut Commissaire à la Jeunesse et aux Sports**

SOUS LA PRESIDENCE DE MESSIEURS

ETIENNE BECART

**Inspecteur Général des Colonies de Vacances**

ET

HOVIG EGHIAZARIAN

**Avocat à la Cour d'Appel de Paris**

Ի ներկայութեան՝ Կրթական եւ Մարզական նախարարութեանց ներկայացուցիչներուն եւ Նահանգապետարանի պաշտօնատարներու, օտար եւ հայ ականաւոր հիւրերու

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ.— ՄԵՆԵՐԳ ՕՐ. ԺՕԶԷ ՎԷՄԵԱՆ (Քոնսէրվաթուարի Ա. մրցանակ)

ԴԱՇՆԱԿ ՍԵԴՐԱԿ ԵԱՎՐՈՒԵԱՆ ՄԵՆԵՐԳՈՂՆԵՐ Պ. Ա. ՍԵՐՈԲԵԱՆ ԵՒ Պ. Մ. ՊՕՂՈՍԵԱՆ

խօսնակ եւ անակնկալներ Տիկ. ՊԵՏԵՐԵԱՆ : Արտասանութիւն՝ ՏԻԿԻՆ ԿԻՒՄԻՒՇԵԱՆ :

ՍԻՓԱՆ-ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ

Տոմսերու համար դիմել գրատուններ՝ Հ. Սամուէլ, Մ. Պարսամեան, Հ. Բալութեան եւ «Յառաջ»ի խմբագրատունը, ինչպէս նաեւ մասնաճիւղերուն :

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Հ. Ց. Դ. Նոր Սերունդի Շաւիլի մասնաճիւղին կողմէ, այս կիրակի ժամը 16էն 23, Շաւիլի դպրոցի սրահին մէջ։ Գեղարուեստական բաժին եւ հայկական Սալոն։ Ձրի եւ առատ պիւֆէ :

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԵՐԵՍՆԱՄԵԱԿԸ

Կապոյտ Խաչի երեսնամեակին առթիւ եղած են հետեւեալ նուէրները :—

Տիկին Մինասեան հազար ֆրանք, Պ. Գ. Մերճանօֆ հազար, Պ. Վ. Մելիքեան հազար ֆրանք :

### Comité du Prix Brémond

ԵՒ «ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԻՒՆԸ»

Կազմակերպած են դասախօսութիւն մը : Այս Չորեքշաբթի (Ապրիլ 15) ժամը 21ին, Սալ Տըպիւսի (Փլէյէլ) 252 Ֆոպուր Սէն Օնորէ :

Կը դասախօսէ :—

ԱՒԼԵԹ ՏԸ ՓԻԹՐԸ

"Sur les pas des Trouvères Arméniens"

Կը մասնակցի՝

**Georges Chamarat**

(Sociétaire de la Comédie Française)

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս Կիրակի Ապրիլ 12ին Լիոնի Հայոց Եկեղեցին 295 Րիւ Պուալօ, Այրի Տիկին Երանուհի Նիկողոսեանի եւ իր զաւակներուն փափաքին համաձայն հոգեհանգստեան պաշտօն պիտի մատուցուի իրենց ամուսնոյն եւ հօր հանգուցեալ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՆԻԿՈՂՈՍԵԱՆի

մահուան տարելիցին առթիւ :

Հանգուցեալին յիշատակը յարգողները կը հրաւիրուին ներկայ ըլլալ նոյն օրը :



### Ի ՅԻՇԱՏԱԿ

### ԱՊՐԻԼԵԱՆ ՆԱՀԱՏԱԿԱՑ

Կիրակի, Ապրիլ 12, երեկոյեան ժամ 5ին :

BASILIQUE DU SACRÉ-CŒUR

Մոնմարթրի եկեղեցիին մէջ, Հայրապետական քառաձայն պատարագ պիտի մատուցանէ՝

ԳԵՐԱՊԱՅԾԱՌ Կ. ԱՄԱՏՈՒՆԻ

Երգեցողութիւնը կը կատարէ Անուշավանի երգչախումբը, ղեկավարութեամբ Պ. Վահրամ Տէվէճեանի :

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մէթրօ Փորթ Մայօ կամ Շամփէրէ

Այս Կիրակի առաւօտ ժամը 10.45ին։ Կը խօսի վերապատուելի ՍԻՄԱԼԵԱՆ ։ Նիւթ՝ «Մէկ հատիկ ոգիդ ա՛ռ» :

### ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ

20, RUE JEMMAPES

Պաշտամունք այս Կիրակի, Ապրիլ 12ին, ժամը 10.45ին։

Կը խօսի՝ Վեր. Ց. ՀԵԼՎԱՃԵԱՆ ։ Նիւթ՝ Ս. Զատիկ Շաբաթը :

Այրի Տիկին Գայեանէ Ճինճեան, Տէր եւ Տիկին Վ. Գարաւմեան եւ զաւակները, Այրի Տիկին Թաչեա եւ զաւակները (Պոլիս), Այրի Տիկին Գօզոս Իսկենտէր եւ զաւակները եւ թոռները (Պոլիս), Տէր եւ Տիկին Ար. Ճինճեան եւ զաւակները եւ թոռները, Տէր եւ Տիկին Հ. Փափազեան եւ զաւակները (Պոլիս), Տէր եւ Տիկին Աբրահամեան եւ զաւակները (Ամերիկա), Օր. Մառի Ժամկոչեան, ինչպէս նաեւ Ճինճեան, Գարաւմեան, Զաքմաքեան, Վանլօվ, Սօռէլ, Իսկէնտէր ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, եղբօր, մեծ հօր, հօրեղբօր, մօրեղբօր եւ ազգականին՝

ԱՐԱՄ ՃԻՆՃԵԱՆԻ

(Վկայուած Փարիզի ատամնաբուժական վարժարանէն):

մահը, որ տեղի ունեցաւ Ապրիլ 9. Սէվրան, իր բնակարանին մէջ, 69 տարեկան հասակին:

Յուղարկաւորութիւնը տեղի պիտի ունենայ 13 Ապրիլ երկուշաբթի առաւօտեան ժամը 9ին, Ռոնի Սու Պուայի եկեղեցիին մէջ (Սէնթ Ժընըվիէվ), ուրկէ մարմինը պիտի ամփոփուի Ռոնիի գերեզմանատունը ընտանեկան դամբարանին մէջ:

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

Համբակառք վէնսէնէն 118 թիւ եւ Մոնթրէօյէն 121 թիւ:

## "ՅԱՌԱՋ" ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Արժանթէօյէն Տիկին Քէչիչեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ Տիկին Մանուկեանի (Թեհրան):

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Վիէնի Հ. Մ. Ը. Մ.ի վարչութիւնը եւ անդամները իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն Գ. Յակոբ Խլոյեանի, Տէր եւ Տիկին Անդրանիկ Խլոյեանի եւ ընտանեկան պարագաներուն, իրենց կնոջ եւ մօր՝

ՏԻԿԻՆ ԳԱՑԾԱՌ ԽԼՈՅԵԱՆԻ

մահուան առթիւ:

Այս միեւնոյն տխուր առիթով, Վիէնի Վասպուրականի Հայր. Միութիւնը, փոխան ծաղկեպսակի, երկու հազար ֆրանք կը նուիրէ Հ. Մ. Ը. Մ.ի:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Գ. Ֆէրմանեան կը նուիրէ երկու հազար ֆրանք ի նպաստ Հայ Կարմիր Խաչի Ֆէօանվիլիէի օդափոխութեան կայանի ընդարձակման:

×

Այրի Տիկին Շարապխանեան կը նուիրէ 1500 ֆրանք, Շուիլի Կապ. Խաչի մասնաճիւղին, փոխան ծաղկեպսակի, ողբ. Վարդնակ Գութուկեանի մահուան առթիւ: (Ստանալ «Յառաջ»էն):

×

Այրի Տիկին Անթառամ Մուրատեանի մահուան առթիւ Այրի Տիկին Եղսատեանց եւ զաւակը կը նուիրեն հազար ֆր. «Յառաջ»ին եւ երկու հազար ֆր. Մշակոյթի Տան Շ. Միսաքեան սրահին:

(Ստանալ «Յառաջ»էն):

×

Գ. Կարպիս Թուլումճեան կը նուիրէ երկու հազար ֆրանք, ի նպաստ Հայ Կարմիր Խաչի Ֆէօանվիլիէի օդափոխութեան կայանին, փոխան ծաղկեպսակի, ողբ. Տիկին Մաքրուհի Գալֆայեանի մահուան առթիւ:

Imprimerie Spéciale
du Journal "Haratch"

### ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

Բժ. եւ Տիկին Ս. Մելիք – Փարսադանեանց բախտաւոր են յայտարարելու իրենց աւագ որդու

ՄԻՔԱՅԷԼԻ

ամուսնութիւնը

ՕՐԻՈՐԴ ԴԱՆԻԷԼ ԲԼԱՇՈՆԻ

հետ, դուստր Բժ. եւ Տիկին Վ. Բլաշոնի:

Պսակադրութիւնը տեղի կ'ունենայ 16 Ապրիլ, Հինգշաբթի ժամը 11ին, Ս. Յովհաննէս Մկրտիչ Հայոց եկեղեցում. 15 րիւ ժան Կուժօն, Փարիզ:

DR. MÈLIK, 49 RUE DE MAUBEUGE, PARIS 10°

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած նախաձեռնութեամբ Դպրոցասէրի աշակերտուհիներու ծնողներուն:

19 Ապրիլին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 5ին, Սալ Շօփէնի մէջ, 8 Րիւ Տարիւ, մէթրօ Թէրն:

Պիտի ներկայացուի Դպրոցասէրի նախկին եւ այժմու սանուհիներու կողմէ:

ՍԻԳԻԼԻ ՄԱԳՆԻՍԸ, եւ Ենովք Արմէնի ԵՍ ԿԸ ՊԱՇՏԵՄ ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒՆ:

Տեղի պիտի ունենան նաեւ երգ, պար եւ արտասանութիւն:

Գին — 300, 400 եւ 500 փրանք:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապ. Խաչի Գոմանի մասնաճիւղի վարչութիւնը Զատկի առթիւ այցելած ըլլալով Մարսիլիոյ Թիմոն Սալվաթոր եւ Սէնթ Մառկրիթի հիւանդանոցները, հիւանդներուն բաշխած է դրամ ու ուտելիքներ եւ տուած՝ անոնց բարոյական եւ հոգեկան բաւարարութիւն: Այս առթիւ վարչութիւնս իր խորին շնորհակալութիւնները կը յայտնէ թաղիս բոլոր նուիրատուներուն որոնք իրենց սրտաբուխ նուէրներով քաջալերած են այս ձեռնարկը: Շնորհակալութեամբ ստացած է Գ. Ա. Թերզիպաշեանէ երեք հազար ֆրանք իր ննջեցեալներուն հոգեհանգստեան առթիւ: Հազար ֆրանք արժանապատիւ Տէր Հմայեակ քահանայէ Գոմանի դպրոցին: Գ. Ժիրայր Տէր Վարդանեանէ հազար ֆրանք Գ. Զարուքեանի տխուր մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի եւ Գոմանի հոգեւոր քոյրերէն հազար ֆրանք Գ. Յակոբ Վարժէմէկեանի մահուան առթիւ:

×

Փարիզի Ազք.ի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները — Գ. Արմենակ Համբարձումեանէ, հանգստեան տուներուն համար, Գ. Խաչիկ Նշանեանի եկեղեցական չարականներու 2 սալեր: Տէր եւ Տիկին Արա Գարթեւեանէ երկու հազար ֆրանք եւ Փարիզի հայկական երգչախումբին կողմէ 2500 ֆրանք, փոխան ծաղկեպսակի ողբ. Տիկին Տիրուհի Գիւլպիւլեանի մահուան առթիւ:

×

Լիոնի եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները, ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան — Տէր եւ Տիկին Նուպար Աւագեանէ իրենց մօր մահուան տարելիցին առթիւ տասը հազար ֆրանք: Ամէն հինգ հազար ֆրանք:

×

Լիոնի Ազք. Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները — Տիկին Ազատի Մակէսեանէ իր ապաքինման առթիւ 15.000 ֆրանք, միեւնոյն առեն Տիկին Մակէսեան 22 աղքատներու բաժնուելու համար միս տրուած է, Գ. Ճ. Գահատուրեանէ 25.000 ֆրանք, Գ. Հ. Գիթապճեանէ հազար ֆր:

## ԱՒԵՏԻՍ ԱՀԱՐՈՆԵԱՆԻ

Մահուան տասնկմէկերորդ տարեդարձին եւ իր կրտսեր որդւոյն տարաբախտ ՎՐՈՅՐԻ մահուան քառասունքին առթիւ, յիշատակի երեկոյթ մը կազմակերպած է ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ

Այս Չորեքշաբթի ժամը ճիշդ 21ին, Քատէի վերնայարկը:

Ցարգանքի խօսքեր մտաւորականներու կողմէ:

Գ. Գրիգոր Մելիքեան ունկնդրել պիտի տայ Ահարոնեանի ՈՍԿԻ ՀԷՔԵԱԹԸ (Երաժշտութիւն՝ Ա. ՄԵՍՈՒՄԵՆՑ)

Մուտքը ազատ է:

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

## ԱՊՐԻԼԵԱՆ ՍԳԱՏՕՆԸ

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Համազգային Ապրիլեան Սգատօն Վալանսի մէջ, կազմակերպուած Հայ Ազգ. Միութեան, նախաձեռնութեամբ եւ մասնակցութեամբ երեք համայնքներուպետներուն: Տեղի կ'ունենայ 11 Ապրիլ 1959. Շաբաթ երեկոյ ժամը 9ին Վալանսի քաղաքապետական սրահը (Սալ տէ Ֆէթ): Օրուան բանախօս՝ Գ. Կ. ՓՕԼԱՏԵԱՆ:

ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ

ՎԵՆԵՏԻԿԻ ՄԷՋ

ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ՍՐԱՊԻՈՆ Վ. ՈՒԼՈՒՀՈՃԵԱՆ, Ընդհ. Աբբայ Մխիթարեան Միաբանութեան Ս. Մարկոսի Մայր Տաճարին մէջ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ, եկեղեցական մեծ հանդէսներու կարգին որ տեղի կ'ունենան Վենետի նախկին պատրիարք Պիոս Ժ.ի մարմնին փոխադրութեան առթիւ:

Ապրիլ 16, ժամը 4ին:

## ՅՈՒՇԱՑԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» խումբի ժողովը այս Երեքշաբթի, ժամը 21ին, 17 Րիւ Պլէօ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

ՊԱՆԵԼՕ – ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Ար – ծիւ» ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Հինգշաբթի ժամը 20·30ին, սովորական հաւաքատեղին : Կարեւոր օրակարգ : Բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է :

ԿԱՊ. ԽԱՉԻ Պուլ. Օտտոյի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Զորեքշաբթի, ժամը 15ին, սովորական հաւաքատեղին : Կարեւոր օրակարգ :

---

ՇԱԲԱԹ, ԱՊՐԻԼ 25, ԺԱՄԸ 21ԻՆ

SALLE BERLIOZ, 14, RUE DE MADRID

Հովանաւորութեամբ Պէթհովըն Ընկերակցութեան

ՍԵՐԺ ՔԱՋԵԱՆ

(Ջութակահար)

Վկայուած՝ էքօլ Նոռմալ տը Միւզիքէն

ՅԱՅՏԱԳԻՐ.— Հէնտէլ, Պախ, Թարթինի–Քրայսլեռ, Մոցարթ, Գարոլ – Ցիմանովսքի :

Տոմս՝ 500 փրանք :

---

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Կապոյտ Խաչի Պուլ. Օտտոյի վարչութիւնը խորին ցաւակցութիւն կը յայտնէ Տէր եւ Տիկին Ռակիպ Քէնտիրեանի եւ զաւակներուն, նաեւ Այրի Տիկին Նանօ Գորգոշեանի իրենց մօր եւ ազգականին Այրի Տիկին ՄԱՐԻԱՄ ՍԻՄՈՆԵԱՆԻ մահուան առթիւ :

Վարչութիւնս շնորհակալութեամբ ստացած է փոխան ծաղկեպսակի երեք հազար ֆրանք, Նանօ Գորգոշեանէ նաեւ երկու հազար ֆրանք իր Թոռներէ Ալիս, Անահիտ եւ Մկրտիչ Քէնտիրեանէ :

---

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Ապրիլեան Եղեռնի առթիւ, Լսարանը կազմակերպած է յարգանքի երեկոյ մը մեր անմահ նահատակաց յիշատակին :

Պիտի խօսի Պ. ՅՈՎՀԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ :

« Թողուցէք որ նահատակները խօսին »

Օրուան պատշաճ գեղարուեստական բաժին Պր. Մելիքեանի կողմէ :

Այս Զորեքշաբթի ճիշդ ժամը 9ին, Քաղէի սրահը :

---

## Les Peuples qui Chantent

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

Կիրակի, 26 Ապրիլ, ժամը 14·30ին

Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ :

Բարձր հովանաւորութեամբ

**M. Jean Sarrailh**ի

Տեսուչ Փարիզի համալսարանին :

Ի նպաստ Ֆրանսայի համալսարանական ուսանողներու սանաթօրիոմներուն :

Կը մասնակցին երգով ու պարով հետեւեալ երկիրները՝ Ֆրանսա, Հայաստան, Սպանիա, Էսթոնիա, Ամերիկա, Յունաստան, Հունգարիա, Հնդկաստան, Իսրայէլ, Ճափոն, Լիթուանիա, Մատակասքար, Լեհաստան, Վիէթնամ :

Գիներն են՝ 400, 300, 200, 150 ֆրանք :

Դիմել՝ Սորպոնի գանձապաններուն :

Ռատիօ Թէլէ Փարի պիտի ներկայացնէ փառատօնը, 21 Ապրիլ, Գշ. օր ժամը 12·45ին, տալով կոչ մը Տօքթ. Տուատիէ, ընդհ. տնօրէն կրթական նախարարութեան առողջապահական ճիւղին, եւ Նաճիբի երգչախումբը, ղեկավարութեամբ Գ. Եանըգ կեանի :

---

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ ԵՐԵԿՈՅԹՆԵՐ

Լսարանին հերթական դասախօսութիւնը տեղի պիտի ունենայ Ապրիլ 25ին, Շաբաթ, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ :

Դասախօս՝ Պ. Ա. ԳՄԲԷԹԵԱՆ

Նիւթը՝ Գ. Սունդուկեանցի կեանքը եւ գործը :

Դասախօսութենէն առաջ եւ դադարին հայկական նուագ եւ թէյի սպասարկութիւն :

Մուտքը ազատ է : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆԸ

ՄԱՐՍԷՅԼ

Իր հերթական դասախօսութիւններու շարքը կը նուիրէ Ապրիլեան մեծ նահատակներուն :

Առաջին հաւաքոյթը տեղի կ'ունենայ 22 Ապրիլ, Զորեքշաբթի իրիկուն ժամը 21ին, Ֆրանսական համալսարանի ամփիթատրոնը (40, Ալէ Լ. Կամպէթա) :

Նիւթ՝ ՍԻԱՄԱՆԹՕ եւ ԹԷԿԷԵԱՆ :

Կը խօսին՝ Յ. ԱՂԱՅԵԱՆ եւ Ա. ՔԷՕՍԷԵԱՆ :

Պիտի ըլլան արտասանութիւններ եւ ընթերցումներ ուսումնասիրուած հեղինակներէն : Ինչպէս նաեւ պիտի տրուին ընդհանուր տեղեկութիւններ հայրենիքի եւ սփիւռքի մասին, ամէն հաւաքոյթի սկզբնաւորութեան :

Մուտքը ազատ է :

---

## ՊԱՏԱՐԱԳ

## ԱՊՐԻԼԵԱՆ ՆԱՀԱՏԱԿԱՑ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Լիոն, Ֆուրվիէրի բլրանիստ եռյակապ տաճարին մէջ Հայածէս Պատարագ եւ պաշտօն

Լիոնի եւ շրջակայի հայութիւնը սիրով կը հրաւիրուի, Ֆուրվիէրի տաճարին մէջ մատուցուելիք պատարագին ու հոգեհանգստեան պաշտօնին, որոնք տեղի պիտի ունենան 26 Ապրիլ, Կիրակի առտուն ժամը ճիշդ տասնին, մէկուկէս միլիոն ապրիլեան նահատակներու եւ 1915 – 18ին ու վերջին պատերազմի ատեն, պատուոյ դաշտին վրայ ինկած հայ զինուորներու համար :

ՄԱՐՈՔԻ ՄԷՋ

Քազապլանքայի Սաքրէ – Քէօրի տաճարին մէջ Գրիգոր Վրդ. Խաչերեան հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ Կիրակի, 26 Ապրիլ, ժամը 10·30ին, Ապրիլեան Նահատակներու յիշատակին :

---

## ԱՊՐԻԼԵԱՆ ՍԳԱՏՕՆԸ

## ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ եկեղեցւոյ հոգաբարձութեան : Տեղի կ'ունենայ 26 Ապրիլ, Կիրակի, տեղւոյն Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ մէջ յաւարտ Ս. պատարագի :

Այս առթիւ Շաբաթ երեկոյ ժամը 17ին, եկեղեցւոյ շրջափակին մէջ, տեղի պիտի ունենայ հանդիսաւոր արարողութիւն եւ զենումը մատաղցու ոչխարներու որ կիրակի սգատօնէն յետոյ իբրեւ աւանդական հոգեճաշ, մեր միլիոնաւոր նահատակներուն անմոռաց յիշատակին պիտի բաշխուի հաւատացեալ ժողովուրդին :

---

## ԼԸ ՖՈՅԻ ԲԱՆԱԿՈՒՄԸ

Լը Ֆոյի բանակումներուն արձանագրութիւնները բացուած են : Բանակավայրը կը գտնուի մօտ ինը հարիւր մեթր բարձրութեան վրայ, Իզէռի մէջ : Հոգեւոր եւ հայկական տաքուկ մթնոլորտ : Ձեր զաւակները արձանագրելու համար դիմել վարչութեան՝

JEUNESSE ET ACTION
6, PLACE DE LA ROTONDE
ST. JEROME, MARSEILLE 13ᵉ
Հեռաձայն 62 85 10 եւ 48 51 88 Մարսէյլ :

